# ԼԵՆԻՆ



Maestoso

Խոսք՝ Գ. ԲՈՐՅԱՆԻ

Երաժշտ. ԵՐՎԱՆԴ ՍԱՐԴԱՐՅԱՆԻ

Ո՞վ է ասում հեռացել ես, դու չկաս,
Դու ապրում ես մեր ծաղկազարդ աշխարհում:
Դու անմեռ ես, միշտ կլինես, կմնաս
Քո սիրելի թոռնիկների սրտերում:

Դու ժպտում ես իմ Լենինյան անկյունից,
Քեզ պատել եմ չթառամող վարդերով,
Էլեկտրական լապտերների լույսերից
Քեզ համար շող պսակ հյուսել կարոտով:

Ա՛խ, արի՛, մեր թանկագին ղեկավար,
Կանչում է քեզ փոքրիկ թոռնիկ Նինելը:
Արի մի տես, որքա՜ն սիրով քեզ համար
Լույս է վառել, ծաղիկ ցանել Նինելը:

Ո՞վ է ասում հեռացել ես, դու չկաս,
Դու ապրում ես մեր ծաղկազարդ աշխարհում:
Դու անմեռ ես, միշտ կլինես, կմնաս
Քո սիրելի թոռնիկների սրտերում:

# ԶՐՈՒՅՑ ՈՐԴՈՒՍ ՀԵՏ

ՍԵՐԳԵՅ ՄԻԽԱԼԿՈՎ

Որդիս, եկ այսօր ու նստիր իմ դեմ,
Մեր երկրի մասին քեզ պիտի պատմեմ
Եվ նրանց մասին, որ կես դար առաջ
Պայքարի կարմիր դրոշը առած,
Ոտքի հանեցին աշխատավորին
Ու կռվի տարան հավատով խորին,
Որ դու կյանքիդ մեջ չտեսնես չարիք,
Երջանիկ ապրես, ապրես անկարիք:

Հիմա դպրոց ես գնում դու ազատ
Եվ դասագրքեր ունես դու այնքան,
Քեզ պես մանուկներ հազար ու հազար
Դառնում են գիտուն և ուսումնական:

Այդպես չէր սակայն օրերում այն հին,
Իշխում էր երկրում կամքը ցարական,
Եվ մանուկներից շատ քչերն էին,
Որ տետր ունեին և այբբենարան:

Դպրոց էր գնում որդին հարստի,
Ականավորի որդին էր գնում,
Բայց մանկան առաջ աշխատավորի
Դպրոցի դուռը միշտ փակ էր մնում:

Գյուղացին վարում, ցանում արտերը,
Աշնանը կալ էր անում գյուղացին,
Եվ սակայն ագահ կալվածատերը
Խլում ու տեր էր դառնում այդ հացին:

Աշխատավորը դատում էր այնքան
Եվ սակայն նորից սոված էր մնում,
Իսկ անբան տերը իր որսորդական
Շներին առատ ու կուշտ էր սնում:

Ուր էլ գնայիր, քո ոտքերի տակ
Տարածվում էին դաշտեր ընդարձակ,
Սիզավետ մարգեր, արտ ու տափաստան,
Բայց այդ ամենը կալվածատիրոջ
Հողն էր սեփական:

Ցորենի արտը նրանն էր միայն,
Անտառի փայտը նրանն էր միայն,




Արգելք կար դրված ամենի վրա...
Տերը ոչ դատում ու ոչ աշխատում,
Բայց քեֆն ինչ ուզեր՝ խմում էր, ուտում,
Ոչինչ չէր հասնում ապրուստին նրա:

Քաղաքներում էլ այդպես էր բանը,
Տիրոջն էր գործիքն ու գործարանը,
Եվ բանվոր մարդը իր ամբողջ կյանքում
Տիրոջ համար էր աշխատում անքուն:



Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

Թե որմնադիր ես՝ շարիր պատը քո,
Դարբին ես՝ ապա մետաղդ կռիր,
Աշխատիր այդպես կորացած մեջքով,
Աշխատիր միայն ու միայն լռիր:

Իսկ եթե բան է՝ չհամբերեցիր
Ու քո բռունցքը սեղմեցիր ամուր,

Տանելի կյանքի պահանջ դրեցիր
Կամ ալ դրոշը պարզեցիր քամուն,
Ոստիկանները քեզ վրա կգան,
Տանջահար կանեն մտրակների տակ,
Եվ դու կիմանաս, թե ի՞նչ է շղթան,
Ի՞նչ է աքսորի ճամփան դժնդակ:

Սակայն աշխարհում խիզախներ կային,
Լուսավոր մարդիկ կային աշխարհում,
Որ խորհում էին կյանքը մարդկային
Փոխել, դարձնել պայծառ մի գարուն:



Ցանկանում էին, որ մարդիկ բոլոր,
Ապահով լինեն, կուշտ լինեն կյանքում
Եվ առաջվա պես քրտինք թափելով,
Տերերի համար չաշխատեն անքուն:

Ու փախչում էին նրանք աքսորից,
Որ առաջնորդեն աշխատավորին,
Որ մարտի տանեն նորից ու նորից
Եվ ցրեն խավարն ու վիշտը խորին:

Որ իրենց արյամբ, պայքարով իրենց
Ծնվի աշխարհում առաջին անգամ
Բանվոր-գյուղացու տերությունը մեծ,
Տերությունն ազատ ու եղբայրական:

Եվ նրանց կամքի ու գործի հանդեպ,
Պայքարի հանդեպ այդ հերոսական,
Անօգուտ էին աքսոր ու բանտեր,
Եվ անզոր էին աստվածն ու արքան:

Ու հիսուն տարի սրանից առաջ
Հասավ վերջապես ժամն ազատության,
Աշխատավորը ալ դրոշն առած,
Գրոհի գնաց ընդդեմ բռնության:

Եվ նրանք, ովքեր տառապել էին,
Կարիքի ուղին անցել անվարան,
Գյուղացիներին ու բանվորներին

Պալատների դեմ պայքարի տարան:
Հիմա Կրեմլի պարիսպների մոտ
Իմաստուն քնով Լենինն է ննջում:
Շուրջը փռված է երկիր մի ծաղկոտ,
Հասկերը անուշ երգ են շշնջում:
Ինչ իղձ ունեինք ու ինչ երազանք,
Հիմա դարձել է արդեն իրական,
Մենք այդ ամենը մեր աչքով տեսանք
Հայրենի երկրում այս նվիրական:

Նայիր քո շուրջը, դաշտեր են անծայր,
Ամեն ինչ մերն է,
Մերն է, մեզ համար...
Ուր էլ որ գնաս՝ քո ոտքերի տակ
Տարածվեն պիտի դաշտեր ընդարձակ,
Սիզավետ մարգեր, այգի, տափաստան,
Եվ դա հողն է մեր ժողովրդական:

Տիրոջ համար չի էլ այգին ծաղկում,
Այգին ծաղկում է հիմա մեզ համար,
Կոմսը չի ապրում էլ այս դղյակում,
Այլ՝ մանուկներ են ապրում անհամար:

Չի լցվում ցորենն ամբարը տիրոջ,
Համայնական են արտերը անծիր,



Եվ Դնեպրոգէսը՝ լույսի այդ հսկան,
Սեփականը չի մասնավոր անձի:

Մենք կոում կրահ ու սերմ ենք ցանում,
Խորունկ հանքերից ածուխ ենք հանում



Ու կառուցում ենք տներ անհամար...
Եվ այդ ածուխը, և այդ տները,
Եվ այդ արտերը, այդ այգիները
Մերն են, մեզ համար...

Այն, ինչ ծնվում է գործարաններում,
Այն, ինչ հողն է մեզ նվիրաբերում,
Ինչով հպարտ է երկիրն հայրենի,



Ինչից սարսում է ոսոխը մեր նենգ
Եվ այն, ինչ մենք դեռ պիտի նվաճենք,
Մերն է ու հավետ մերը կլինի:

Նայի՛ր, քայլում է գեներալը ծեր.
Նա հիսուն տարի սրանից առաջ
Բարիկադներում զինվոր է դարձել
Ու պահակ կանգնել Սմոլնու առաջ:

Անբեղ, անմորուս պատանի էր նա
Այն տարիներին գոռ ու հողմածեծ,
Բայց հրամանը հեղափոխության
Նա խիզախորեն ի կատար ածեց:

Նայիր, Կրեմլի դարբասից այն հին
Ելնում է ահա ալեհեր մի կին
Եվ քայլում Կարմիր հրապարակով,
Քայլում տիրական ու հպարտ քայլքով...

Իմ ծանոթն է նա, ես գիտեմ նրան,
Անցել է կյանքում փառավոր ուղի,
Դեպուտատ է նա ու մեծ գիտնական,
Սակայն եղել է խոհարարուհի:

Նայիր, անցնում են մանուկներ երեք,
Ամռանը նրանք Արտեկում եղան,
Մեկը յակուտ է, մյուսը՝ ուզբեկ,
Յակուտիայից է այս երրորդ տղան:

Քայլում են նրանք հաշտ ու մտերիմ,
Քայլում շարքերում հենց նույն ջոկատի,
Նրանց հայրերն էլ մեկտեղ էին միշտ
Շուխ ու բոցի մեջ ռազմաճակատի:

Դժվար է համրել հողմերն այն բոլոր,
Որ շառաչելով մեր գլխով անցան,
Բայց հիսուն տարում երկիրն օրեցօր
Աճեց, ամրացավ ու հզորացավ:

Քաղաքներ ելան անապատներում,
Եվ խոպաններով ջրանցքներ անցան,
Գետերը, փոխած հին ընթացք ու հուն,
Տուրբինների մեջ ուժ և լույս դարձան:

Մարդն իր ձեռքերը երբեք չծալեց,
Հրաշքներ գործեց մարդն իր ձեռքերով,
Նա հողը հերկեց, նա մետաղ հալեց
Եվ խիզախ սուրաց տիեզերքներով:

Ապրի՛ր, իմ որդի, ու հպարտացիր,
Որ սովետական հողում ես ծնվել,
Քո հայրենիքին արժանի դարձիր
Եվ ընտրիր ուղիդ՝ լուսավոր ու վեհ,
Երջանկության մեջ, թե արհավիրքի
Եղիր կավակը քո հայրենիքի:
Մենք միշտ առաջ ենք նայում ու հեռուն,
Ապագային ենք նայում ցնծագին,
Մեր նպատակն ենք տեսնում լույսերում
Ու հասնենք պիտի այդ նպատակին:

*Թարգմ. Դ. ՎԱՆԻ*



# ՖԵԼԻՔՍ ՁԵՐԺԻՆՍԿԻ

*«Երկաթյա Ֆելիքս». այսպես էին ասում այդ աննկուն հեղափոխականին ու հրաշալի մարդուն թե՛ նրա ընկերները և թե մեր երկրի բոլոր աշխատավորները: Այո, իրոք, որ երկաթյա էր Ֆելիքս Ձերժինսկին, որովհետև նրան չկարողացան ընկճել ցարի բանտերն ու հալածանքները: Անկոտրում էր նրա կամքը նաև Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո, երբ հակահեղափոխական սև ուժերը ոտքի էին կանգնել կործանելու նորաստեղծ կարգերը: Նա միշտ բարձր պահեց պրոլետարիատի դասակարգային սուրը ընդդեմ բոլոր տեսակի թշնամիների:*

*Դժվար է համառոտ պատմել Ֆելիքս Ձերժինսկու մասին: Յու. Գերմանի այս պատմվածքը ցույց է տալիս, թե ինչպիսի բարի, ջերմ ու կարեկից սիրտ է ունեցել Ձերժինսկին, որին ասում էին երկաթյա: Պատմվածքը տպագրվում է կրճատումներով:*



## ՏՂԱՆԵՐԸ

ՅՈՒ. ԳԵՐՄԱՆ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Ուշ երեկոյան Ձերժինսկուն ընդհանուր կացարանից տեղափոխեցին երրորդ հարկ: Այստեղ գտնվում էին մեկուսարանները, բայց բանտը կալանավորներով լեփ-լեցուն լինելու պատճառով յուրաքանչյուր մեկուսարանում տեղավորում էին երկու-երեք հոգու: Այս բանտախցում էլ մահճակալն արդեն զբաղված էր: Սկզբում նա կարծեց, թե մահճակալին քնած է մեկ հոգի, բայց հետո հասկացավ, որ երկուսն են: Նա կանգ առավ մահճակալի մոտ և սկսեց ուշադիր նայել: Լամպը հազիվ էր լուսավորում: Ձերժինսկին բարձրացրեց պատրույգը և խոնարհվեց քնածների վրա: Ա՜յ քեզ բան: Երեխաներ էին, գիմնազիայի շինելով ծածկված երկու տղա: Երկուսի տարիքը միասին վերցրած երեսուն չէր լինի: Ինչի՞ համար էին նրանց բանտարկել: Երևի գիշերները նրանք վախից լաց են լինում և մայրիկ կանչում:

Տղաները հանգիստ քնած էին: Ձերժինսկին նստեց սեղանի մոտ դրված աթոռակին, գլուխն առավ ափերի մեջ և ընկավ մտքերի ծովը՝ հայացքը չհեռացնելով տղաներից: Ուղիղ կես ժամ այդպես՝ անշարժ նստելուց հետո, ոտքի կանգնեց, վերցրեց իր կապոցը, որի մեջ մթերք կար, և սկսեց ընթրիքի պատրաստություն տեսնել: Երբեք նա այդպես խնամքով չէր պատրաստել ընթրիքը, ինչպես այսօր, և ամեն բան հաջող էր ստացվում:

Հացի կտորների վրա երշիկ ու թարմ վարունգ դրեց: Հետո հանեց խաշած ձու, օղաբլիթ և սառնաշաքար: Սառնաշաքարի կտորները առանձնակի շուք էին տալիս այդ արքայական հյուրասեղանին:

Այդ ամենը սեղանին դնելով, նա դարձավ քնած տղաների կողմը և ցածր ձայնով ասաց.

— Խնդրում եմ վեր կենաք: Ընթրիքը մատուցված է ոսկե սրահում:

Տղաներից մեկը հազիվ բաց արեց աչքերը և քնատ, բայց սիրալիր մի հայացք նետեց Ջերժինսկու վրա: Մի պահ նա ոչինչ չհասկացավ, ապա նստեց մահճակալին ու հարցրեց.

— Դուք նո՞ր եք:

— Ի՞նչ իմաստով,—չհասկացավ Ջերժինսկին;

— Ձեզ հենց նո՞ր են ձերբակալել:

— Ո՛չ, հենց նոր չէ: Իսկ ձե՞զ:

— Երկու ամիս առաջ: Եկեք ծանոթանանք: Անունըս Սերյոժա է,— և նա իր ձեռքը մեկնեց Ջերժինսկուն:

— Արթնացրեք ձեր ընկերոջը,—ասաց Ջերժինսկին,—պիտի ընթրենք:

Ուտելիս տղաների աչքերը վառվում էին, բայց քիչ էին ուտում. ըստ երևույթին, ամաչում էին: Ջերժինսկին խորհուրդ տվեց ուտել բոլորը:

— Ախր մեր պատճառով դուք սոված կմնաք, մենք ոչինչ չունենք, որ հյուրասիրենք ձեզ,—ասաց Բորիսը՝ մյուս տղան:

— Ոչինչ,—ժպտաց Ջերժինսկին,— սոված չենք մնա, աշխարհում լավ մարդիկ շատ կան:

Ընթրելուց հետո նրանք զրույցի բռնվեցին, որը տևեց ավելի քան երկու ժամ: Խոսում էին ամեն ինչի մասին:

Ջերժինսկին հասկացավ, որ տղաները գտնվում են սարսափելի ջղագրգիռ վիճակում, որը ամեն րոպե կարող էր պայթել արցունքի հեղեղով: Ութև տղաները հանգիստ քուն մտան, բայց կեսգիշերին նա լսեց Սերյոժայի հեկեկոցը: Ջերժինսկու սիրտը ճմլվեց խղճահարությունից:

— Ի՞նչ է, Սերյոժա, քունդ չի՞ տանում,—հարցրեց նա շշուկով:—Օդը ծանր է, երևի դրանից է:

— Այո, շատ է ծանր,— արցունքը կուլ տալով ասաց Սերյոժան:

Մոտ երկու ժամ նրանք զրուցում էին ցածր ձայնով:

— Սերյոժա, ինչի՞ համար են ձեզ բանտարկել,—ի վերջո հարցրեց Ջերժինսկին:

— Գիմնազիայում մենք ձեռագիր հանդես էինք հրատարակում,—սկսեց Սերյոժան:— Մի հոդվածում քննադատել էինք տեսուչին: Ճիշտն ասած, հոդվածը մենք չէինք գրել, այլ մեր ութերորդ դասարանցիներից մեկը: Նրա եղբայրը սոցիալ-դեմոկրատ է: Եվ մենք չէինք կարող նրան մատնել: Հոդվածում ոչ միայն տեսուչի հասցեին բան կար, այլ նաև ցարի: Դուք համաձա՞յն եք ինձ հետ, որ մենք որպես ազնիվ մարդ իրավունք չունեինք



ծախել մեր ընկերոջը: Ասացինք, որ ինքներս ենք գրել հոդվածը:

— Իհարկե,—համաձայնեց Զերժինսկին:

* * *

Առավոտյան Զերժինսկին տղաներին արթնացրեց շատ վաղ, թեև նրանք խնդրում էին մի քիչ էլ քնել:

— Մարզանքի՛,—հրամայեց նա,—երկու ամսում դուք արդեն դեղնել եք այստեղ: Հապա, կատարեք այն, ինչ ես եմ անում: Ներշնչեք խորը: Այդպե՛ս: Սերյոժա, համարձա՛կ, ձեռքերդ պարզիր առա՛ջ: Լավ է: Թաթերի վրա: Կեցցե՛ք:

Առաջին պարապմունքը տևեց քսան րոպե:

— Վաղը ավելի շատ կմարզվենք,—սպառնաց Զերժինսկին,—իսկ հիմա խնդրում եմ կարգին լվացվեք:

Նա իր կապոցից հանեց օճառ ու սրբիչ:

— Ահա, խնդրեմ: Երկուսիդ վզերն էլ սևացած են: Այդպես չի կարելի: Իսկական մարդը բանտում էլ պիտի մարդ մնա: Լվացվեք:

Հենց որ տղաները լվացվեցին, Զերժինսկին պատվիրեց մարմինը շփել թաց սրբիչով:

— Սառն է,—ասաց Սերյոժան:

— Ի՞նչ,—հարցրեց Զերժինսկին:

Սերյոժան չհամարձակվեց կրկնել և հետևեց Բորիսի օրինակին:

— Իսկ հիմա,—ասաց Զերժինսկին,—հիմա մենք կարգի կբերենք մեր կացարանը: Մենք մարդիկ ենք, իսկ մեր բանտախուցը խոզանոցի է նման: Դուք ինչպե՞ս եք կարողացել երկու ամիս ապրել այստեղ:

Տղաները լռեցին:

Երկու ժամ հետո բանտախուցը անճանաչելի դարձավ:

— Տեսնու՞մ եք,—գոհ ժպիտով ասաց Զերժինսկին:—Իսկ հիմա թեյ խմենք: Ուզու՞մ եք թեյ խմել:

Թեյելիս Զերժինսկին շարունակ շփոթում էր տղաների անունները, ծիծաղելի կերպով ու շատ նման կատարում էր Սերյոժայի տնազը, թե ինչպես էր նա լվացվում: Տղաները քրքջում էին և երկուսին էլ թվում էր, որ նրանք վաղուց ի վեր ճանաչում են այդ զարմանալի մարդուն: Երևի ճակատագիրն էր նրան ուղարկել իրենց մոտ: Եվ աշխարհում նրանք այժմ ամենից ավելի վախենում էին մի բանից. Զերժինսկուն կտանեն իրենց մոտից և իրենք նորից կմնան երկուսով...

Դիշերը Զերժինսկուն տարան հարցաքննության: Ժանգոտ կողպեքի ձայնից արթնացավ Բորիսը և վեր բարձրացրեց գլուխը: Տեսնելով, որ Զերժինսկուն տանում են, հրեց Սերյոժային, և երկուսն էլ նստեցին մահճակալին: Լայն բաց արած աչքերով նրանք մեկ նայում էին լապտերով ժանդարմին, մեկ Զերժինսկուն ու ժանգոտած կողպեքին: Տղաները ամբողջ մարմնով դողում էին:

— Ու՞ր եք գնում,—վերջապես հարցրեց Բորիսը:

— Ես շուտով կվերադառնամ,—պատասխանեց Զերժինսկին,—բայց դուք մի՛ սպասեք ինձ, քնեք:

— Իսկ ձեզ չե՞ն տեղափոխում,—կերկերուն ձայնով հարցրեց Սերյոժան:

Զերժինսկին չգիտեր տեղափոխելու են, թե ոչ, բայց ասաց, որ չեն տեղափոխում:

Հարցաքննությունը կատարում էր մի ճարպակալած ռոտմիստր:

— Մի՞թե դուք չձանձրացաք բանտից,—հանկարծ հարցրեց նա՝ ավելի մոտ կանգնելով Զերժինսկուն:—Մի՞թե դուք ազատություն չեք ուզում:



Զերժինսկին չէր պատասխանում:

— Բացի այդ, ձեզ պետք է ավելի լավ սնվել,—սրտագին ձայնով շարունակեց ժանդարմը:—Ինքներդ նայեցեք ձեզ. ինչքա՜ն գունատ ու տանջ-

ջահար տեսք ունեք: Ձեզ կաթնամթերք է պետք, թարմ կանաչեղեն...

Ձերժինսկին դանդաղորեն բարձրացրեց գլուխը և մի հայացք նետեց ռոտմիստրի վարդագույն դեմքին: Սարսափելի ատելություն էր բոցավառվում նրա գեղեցիկ աչքերում, և այդ կրակից այնպես վախեցավ ռոտմիստրը, որ նույնիսկ մի քայլ ետ ընկրկեց:

Ի՞նչ եք մտադիր...— հարցրեց նա:

Ոչինչ, հանգիստ պատասխանեց Ձերժինսկին: Դիմում ունեմ:

Դիմու՞մ: Այս կալանավորը առաջին անգամն է արտասանում դիմում բառը: Ի՞նչ է նրան պետք:

Ռոտմիստրը նստեց գրասեղանի մոտ և ասաց, որ լսում է:

Ձերժինսկին նորից մի հայացք նետեց ռոտմիստրի վրա, բայց այս անգամ այլ կերպ. ինչպես տարկային են նայում:

— Բանն այն է,—ասաց նա,—որ այս բանտում նստած են երկու երեխա: Երկու ամիս է՝ նրանք այստեղ են: Քաղցից հյուծվել են արդեն: Որևէ մեղադրանք չկա նրանց նկատմամբ: Ինձ քաջ



հայտնի է, որ եթե երեխաները ազատ չարձակվեն, ամբողջ աշխարհի լրագրերում հոդվածներ կտպագրվեն այն մասին, որ ձեզ մոտ որպես քաղաքական հանցագործներ նստած են երեխաները...

Ժանդարմը գլխի շարժումով հասկացնել տվեց, որ ըմբռնում է Ձերժինսկու խոսքերի իմաստը:

— Միայն մի հարց,—ասաց նա:—Իսկ ո՞վ է մտադիր այստեղից հոդված գրել արտասահմանյան թերթերին:

— Այդ կարգի հարցերին, ինչպես գիտեք, ես չեմ պատասխանում, —ասաց Ձերժինսկին:

— Բայց հետո կպատասխանեք:

— Երբե՛ք չեմ պատասխանի:

— Երեք օր պատժախուց նստելուց հետո՞ էլ:

— Երբե՛ք:

— Իսկ մեկ շաբաթ հետո՞:

— Երբե՛ք:

Այժմ նրանք կանգնած էին դեմառդեմ: Ձերժինսկին իր հրացայտ ու ատելությամբ լի աչքերով նայում էր փոքրամարմին ու ճարպակալած ժանդարմին:

Ռոտմիստրը հնչեցրեց զանգը և պատվիրեց Ձերժինսկուն մեկ շաբաթով փակել պատժախցում:

Երբ նա նորից վերադարձավ իր բանտախուցը, տղաները հիացմունքի այնպիսի բացականչություններով ու ջերմագին գրկախառնությամբ դիմավորեցին նրան, որ հուզմունքից դողացին նրա շրթունքները:

— Աղմուկ մի՛ արեք,—ասաց նա,—թե չէ դրա համար ինձ մի շաբաթով նորից պատժախուց կտանեն:

Այդ մի շաբաթում նա ամբողջովին հյուծվել ու դեղնել էր, բայց աչքերը վառվում էին զարմանալի մի կրակով:

Հացի նստեցին, հետո ծայր առավ զրույցը...

Ձերժինսկու միջոցով ամբողջ բանտն արդեն գիտեր տղաների մասին:

Կիրակի օրը երեկոյան Բորիսին տեսակցություն էր թույլատրված իր հոր հետ: Նա բանտախուց վերադարձավ կարմրած աչքերով, բայց գոհունակ ժպիտը դեմքին:

— Մեզ երկուսիս էլ վտարել են գիմնազիայից,—ասաց նա Սերյոժային:

— Իսկ ի՞նչ պիտի անենք,—վշտացավ սա:

— Չգիտեմ,—պատասխանեց Բորիսը:—Բայց գիտե՞ս, թե ինչ ասաց հայրս:

— Ի՞նչ:

Բորիսը նայեց նախ Ձերժինսկուն, ապա Սերյոժային, հետո նորից Ձերժինսկուն և ասաց.

—Հայրս ասաց,—կմկմաց Բորիսը,—հայրս ասաց, որ ինքը հավանություն է տալիս մեր արարքին: Մայրիկը նույնպես: Քո մորաքույրն էլ: Նրանք հպարտանում են, որ մենք չենք ծախել մեր ընկերոջը: Իսկ գիմնազիայի մասին հայրս ասաց. «Շատ

ափսոս… ես էլ գիմնազիա չեմ վերջացրել, բայց մարդ եմ դարձել…»

Բորիսը նորից նայեց Ջերժինսկուն:

— Ահա թե հայրս ինչ խնդրեց հաղորդել ձեզ,— դողացող ձայնով ասաց նա, - բոլորը սիրում են ձեզ որպես հարազատի և երբեք, երբեք չեն մոռանա:

Մեկ օր հետո տղաներին ազատ արձակեցին:

Հրաժեշտ տալիս, Սերյոժան, որ Բորիսից ավելի փոքր էր, ձայնը գլուխն էր գցել: Դռան մոտ կանգնած ջահել զինվորը զարմացել էր, որ ազատվում են բանտից և լաց են լինում:

Բորիսը երկար ժամանակ խորհում և ինչ-որ բան էր ուզում ասել Ջերժինսկուն, բայց ոչինչ չկարողացավ ասել. նա էլ լաց եղավ և փաթաթվեց Ջերժինսկուն:

— Դե, դե…—ասաց Ջերժինսկին:—Ցտեսություն, սիրելիս: Գնա: Թե չէ կփոշմանեն և ձեզ բաց չեն թողնի: Գնացեք: Ես նույնպես չեմ մոռանա ձեզ:

Նա սովորականից ավելի գունատ էր, բայց բոլորովին անվրդով: Երբ դուռը շրխկաց տղաների հետևից, Ֆելիքս Ջերժինսկին մոտեցավ լուսամուտին և երկաթյա ճաղերի արանքից երկար-երկար նայում էր երկնակամարի փոքրիկ պատառին:

*Թարգմ. Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆԸ*

## ԱՇՆԱՆ ԵՐԳ

*ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ*

Աշունը քոչում է,
Ծառերը ճոճում է,
Զամբարը հաչում է,
Այգում դեղնած,
Զվել են լորերը,
Լռել են ծորերը,
Ցրտում են օրերը
Կամաց-կամաց:

Սարվորը գնում է.
Աղբյուրը ծայնում է,
Այն ու՞մ է, այն ու՞մ է
Այդպես կանչում.

Անգամ չոր արոտը,
Առվակն ու պաղ օդը
Մարդու ծով կարոտն են
Կարծես շնչում:

Մշուշը սարում է,
Կատարին թառում է,
Անտառն էլ պարում է
Վայրի ուժով,
Զեն մայրում զառները,
Մենակ են լեռները,
Փակվել են դռները
Երկնի մուժով:

## ԱՇՈՒՆ

*ՄՈՎՍԵՍ ՑԱԽՇՈՒՆՑ*

Աշուն իմ, աշուն,
Շռայլ ու բարի,
Ինչքա՞ն ես բաշխում
Լիություն, բարիք
Ու լցնում առատ
Ե՛վ տուն, և՛ մառան:

Դու դաշտ ու անտառ,
Աշխարհ բովանդակ
Դարձրել քեզ համար
Անծայր տաղավար՝
Բացել ես հիմա
Բոլորին ի տես
Բյուր կտավների
Վառ ցուցահանդես:

Աշուն իմ, աշուն,
Գույների շռշյուն,
Տաք, համանվագ
Գույների կրակ,
Դու արդեն տարեց,
Բայց հոգով արի,
Հանճարեղ ու մեծ
Գեղանկարիչ:

*Նկ. ՄԱՐՏԻՆ ՊԵՏՐՈՍՅԱՆԻ*




Դ'ԷՐՎԻԼԻ

Նկ. ԱՐՄԻՆԵ ԿԱԼԵՆՑԻ

### Գլուխ չորրորդ

## ԴԱՏԱՍՏԱՆ

Կրեկն աչքերը բացեց այն ժամանակ, երբ լուսաբացը երկրի երեսից դուրս էր մղում խավարը։

Իրեն տեսնելով ծառի ճյուղերին, մի պահ զարմացավ, բայց իսկույն մտաբերեց երեկվա դեպքերը, նայեց կողքին քնած եղբորը, ապա աչքերն ուղղելով անծայրածիր տափաստանի կողմը, խոր մտածմունքի մեջ ընկավ։

Առնետների հրոսակները անհայտացել էին։ Նրանց հետ վերացել էր նաև վտանգը։ Կրեկը արթնացրեց եղբորը։ Տղաները գիշերվա ցրտից մրսած, արագ-արագ ծառից ցած իջան։ Նրանք այժմ մտահոգված էին, ինչքան հնարավոր է, շուտ հասնել քարանձավ և բնակիչներին հանձնել համեղ ու հարուստ ավարը։

Գուցե առատ միսը մեղմացներ ընտանիքի մյուս անդամների ահեղ զայրույթը։ Եվ եղբայրները իսկույն հավաքեցին նախորդ օրվա սպանած առնետներին և ճանապարհ ընկան։

Երկարականջ Ռյուգը քարանձավից առաջինը նկատեց դժբախտ եղբայրներին, որոնց ընտանիքի անդամները մեռած էին համարում։ Նա թարուն նշան արեց Գեյին, և երկուսով իջան տղաներին դիմավորելու։

Կրեկն ու Օժոն բացատրեցին, թե ինչպես եղավ, որ իրենք հեռացան քարանձավից։

— Հավատում եմ, դուք ցանկացել եք մեզ քաղցից փրկել,— մռմռաց բարեհոգի Ռյուգը,— և գուցե Տոհմավագը ձեզ ների, բայց երեկ գիշեր վերադարձել են հայրերը։ Նրանց կատաղությանը չափ ու սահման չկա։ Քարանձավում հանգել է կրակը, և դրա մեղքը միայն քոնն է, Կրեկ։

— Ի՞նչ են որոշել, ի՞նչ պատիժ պիտի տան մեզ։

— Ձեզ կպատժեն այնպես, ինչպես վարվում են վայրի ձիերի և եղջերուների հետ, երբ նրանց շրջապատում են քաղցած որսորդները։

— Մեզ կսպանե՞ն։

— Այդպես է օրենքը։

Կրեկը լուռ գլուխը կախ գցեց, իսկ փոքրիկ Օժոն աղիողորմ լաց եղավ։

— Ավելի լավ է նրանց աչքին մի՛ երևացեք և թաքնվեք անտառում,— խորհուրդ տվեց Ռյուգը։

— Փախչենք, Կրեկ...— արցունքների միջից աղերսեց Օժոն։

— Սպասիր։ Ոչ մի քայլ չանենք,— թփերի հետևից հնչեց Տոհմավագի ահարկու ձայնը.— Ես ամեն ինչ լսեցի։ Այժմ արդեն ուշ է, ես բռնել եմ ձեզ, դուք պետք է ներկայանաք քարանձավի բնակիչների արդար դատաստանին։

— Օժոն մեղք չունի, Տոհմավագ,— ասաց Կրեկը։

Դաժան ծերունին ուշադրություն չդարձրեց հանցանքը պաշտպանողին։

— Ես քեզ միշտ հավատացել եմ, Կրեկ, հիացել քո խիզախության, ձեռներեցության և աշխատասիրության վրա, իսկ դու չարդարացրիր ծերունու հավատը, դու սպանեցիր մեր փրկարարին՝ կրակին... Քո մեղքը ավելի մեծ է, քան պատկերացնում ես։

Ծերունի Տոհմավագի առաջն ընկած, հանցագործները նեղ արահետով ցած իջան։ Իսկ երբ քարանձավ մտան, ցրտից և խավարից ուղղակի սարսեցին։ Ամբողջ ցեղը հավաքվել էր։ Հանգած օջախի շուրջը ըստ տարիքի նստել էին ցեղի ավագները։ Ամենուրեք տիրում էր մեռելային լռություն։

Կրեկը մի հայացք գցեց ցեղակիցների վրա. նրանց մռայլ դեմքերը և հորդ արցունքները ցնցեցին խեղճ տղային։ Նա հասկացավ, որ ամեն ինչ կորած է։

Օժոն վախից դողում էր։ Նա աչքերով անվերջ մորն էր փնտրում, որ գոնե մայրը հայացքով սփոփեր թրթռացող սիրտը, բայց մոր դեմքը չըգտավ։

— Հանցագործները թող խոսեն, մենք լսում ենք,— ատամների արանքից մռմռաց ավագներից մեկը։

Սկիզբը՝ «Պիոներ» № №8, 9

Կրեկը մանրամասն պատմեց իրենց գլխով անցածը։ Նա անընդհատ փորձում էր ցեղի ավագների գութը շարժել։

— Մենք ցանկանում էինք ընտանիքի համար կեր հայթայթել, չէ՞ որ քարանձավում մնացածները սովից պիտի կոտորվեին։ Հարգելի ավագներ, գնալուց առաջ ես հոգացել էի կրակը թեժ պահելու մասին, — շունչը կտրած խոսքը վերջացրեց նա։

— Կրակին դավաճանել եք. կրակն այլևս չկա, նա մեռել է, — մռնչաց ավագներից ամենակատաղին, — կրակի վրեժը պետք է լուծվի։

Այս խոսքերն ասելով՝ նա զայրագին վեր կացավ տեղից, բռնեց մեղավորների պարանոցներից և ավելի բարձր ձայնով բղավեց.

— Ամեն ինչ որոշվա՛ծ է։ Կրակը մեռել է, դավաճանները նո՛ւյնպես պիտի մեռնեն։ Իսկ ձեզ, հայրե՛ր, մայրե՛ր և զավակնե՛ր, այս երկու մեղավորների ճակատագիրը թող դաս լինի։

Դաժան մարդը քարե ծանր կացինը ճոճեց դժբախտ եղբայրների գլխին։ Բայց Կրեկը խույս տվեց, պոկվեց նրա ձեռքից և ծունկ չոքեց ծերունի Տոհմավագի առջև.

— Ո՜վ մեծ հայր, ճիշտ է, կրակը մեռել է, և նրան սպանողը ես եմ, որի համար արժանի եմ բարձրագույն պատժի՝ մահվան, բայց դու կարող ես փրկել կրակը, չէ՞ որ քեզ հայտնի է Փռ-օտարականի գաղտնիքը։

— Փռ-օտարականի՞... ինչի՞ մասին է խոսքդ, — զարմացավ ծերունին, — ես մոռացել եմ։

— Մի՞թե չես հիշում Փռ-օտարականին։ Նա քարանձավ եկավ վիրավոր և քաղցած։ Իր ցեղակիցներից կենդանի մնացել էր միայն նա։ Մեր հայրերը թույլ տվեցին, և նա ժամանակավորապես մեզ հետ ապրեց։ Հիմա խնդրում եմ դու կրկնիր այն, ինչ անում էր Փռ-օտարականը։

— Իսկ ի՞նչ էր անում նա, ինչ-որ չեմ հիշում, եթե բան գիտես, մի՛ թաքցրու, ասա, թող բոլորը լսեն։

Կրեկը վեր կացավ, նայեց իր ցեղակիցներին և սկսեց պատմել.

— Մի անգամ ես թափառում էի հարևան քարայրներում և հանկարծ քարերից մեկի տակ տեսա զարմանալի մի գործիք։ Ուրախությունից թե վախից, այժմ չեմ հիշում, բարձրաձայն աղմկեցի։ Փռ-օտարականը լսելով ձայնս, մոտեցավ և մեղմ շշնջաց. «Կրեկ, քո գտած գործիքն իմն է, խնդրում եմ այս մասին ոչ ոքի չհայտնես»։ Եվ հետո բարեկամաբար ավելացրեց. «Իսկ երբ հասնի իմ գնալու ժամանակը, ապա այս թանկագին գործիքը կնվիրեմ ծերունի Տոհմավագին, բայց քանի որ դու ես գտել իմ գանձը, ապա իմացիր և նրա գործածության մասին»։ Այս ասելով Փռ-օտարականը վերցրեց կարճ, մեջտեղը անցք ունեցող մի փայտ, ապա մեկ ուրիշը, ավելի երկարը և ծայրը հագցրեց անցքի մեջ ու ձեռքերի ափերի մեջ առած սկսեց պտտեցնել։ Շուտով կարճ փայտի անցքից ծուխ երևաց, իսկ հետո՝ բոց...

Տոհմավագը խորը հոգոց հանեց և վեր կացավ.

— Կրե՛կ, որդիս, դու ճշմարիտ ես, այժմ ամեն ինչ մտաբերեցի, բայց որտե՞ղ են հիմա Փռ-օտարականի փայտիկները, — ապա նա դառնալով դեպի դաժան ավագը, մեղմ ավելացրեց. — Եթե իրոք գտնվի այդ գործիքը, գուցե փոխվի նաև մահվան դատավճիռը։





— Թող Տոհմավագի կամքը լինի, — ասաց ավագը։— Ռյու՛գ, հանցագործներին քարանձավից դուրս տար և խիստ հսկիր։

Ռյուգը հոգու խորքում ուրախացած, ուզում էր հրամանը կատարել, երբ Տոհմավագը նորից դիմեց Կրեկին.

— Իսկ ինչու՞ մինչև այժմ ինձ ոչինչ չէիր հայտնել։

— Ների՛ր, Տոհմավագ, իրավունք չունեի, ես հրո-օտարականին երդվել էի լռել։

— Այրե՛ս, Կրեկ,— ասաց ծերունին—այժմ հեռու եղիր։

Տոհմավագը և մյուս պետերը քայլերն ուղղեցին այնտեղ, ուր պետք է պահված լինեին փրկարար գործիքը։

Կրեկը իրավացի էր։ Քարի տակ նրանք գտան թիթեղի մեջ խնամքով փաթաթված հրո-օտարականի հրաշագործ փայտիկները։ Տոհմավագը ձեռքն առավ դրանք, ուշադիր զննեց և մյուսների ուղեկցությամբ վերադարձավ ցուրտ ու խավարչոտ քարանձավը։

Ծերունին հարմար տեղ փնտրելով, նստեց, ոտքերի տակ դրեց անցք ունեցող կարճ փայտիկը, ապա մյուս փայտի ծայրը հագցրեց անցքի մեջ և ափերի մեջ առնելով սկսեց պտտել։

Տոհմավագի շուրջը խմբվածները շունչները պահած հետևում էին նրա շարժումներին։ Շուտով փայտի անցքից ծուխ երևաց։ Կրեկի սիրտը ուրախությունից թփրտաց։ Նա վերցրեց չոր խոտ և մոտեցրեց անցք ունեցող փայտիկին, խոտը բոցավառվեց։ Տոհմավագը խլեց նրա ձեռքից հենց նոր առկայծող կրակը և կպցրեց չոր ցախի խրձին։

— Կրակը կենդանացավ, - ասաց ծերունին, — մեր տունը նորից տաք կլինի և լուսավոր։ Այժմ եկեք որոշենք, թե ինչպես վարվենք դատապարտյալների հետ։

Նորից սկսվեց ավագների խորհրդակցությունը։ Վերջապես ծերունի Տոհմավագը ձեռքն առավ իր գավազանը և հանդիսավոր կերպով հայտարարեց նոր դատավճիռը.

— Կրակը քարանձավում կենդանացավ։ Ավագները Օժոյին որպես անչափահասի ներում են շնորհում...

Շնորհակալությո՛ւն, բացականչեց անհամբեր Օժոն, և վախեցած հարցրեց.— Իսկ Կրե՞կը...

— Կրեկի՞ն,— ծոր տվեց գերագույն դատավորը.— Կրեկին նույնպես կյանք է շնորհված, բայց պայմանով... ով մի անգամ դավաճանում է և ընտանիքի առաջ պարտքը չի կատարում, հետագայում կարող է նույնպես դավաճանել։ Այդպես է մեր օրենքը։ Քարանձավի բնակիչները Կրեկին այլևս վստահել չեն կարող, նա պետք է թողնի մեզ և հեռանա։

— Սարսափելի է, — շշնջաց Ռյուգը։

— Լռի՛ր, Ռյո՛ւգ, ավագների որոշումը վերջնական է։ Կրեկին կտրվի զենք, հագուստ և ուտելիք։ Մինչև մայրամուտ նա պարտավոր է թողնել մեր բնակավայրը։ Դուք՝ Ռյուգ և Գել, աքսորականին կուղեկցեք մինչև անտառի խորքը։

—Սարսափելի է, Տոհմավագ,--կրկնեց Ռյուգը,— չէ՞ որ Կրեկը դեռ երեխա է։

— Լռի՛ր, ապերախտ, ինչպե՞ս ես համարձակվում, Կրեկի մայրն անգամ սիրտ չի անում հակաճառել...

Ռյուգը և Գելը պատրաստվեցին հրամանը կատարել։ Նրանց հետևեց նաև փոքրիկ Օժոն։

— Տոհմավագ, — ասաց Կրեկը, — մի՞թե այլևս քեզ չեմ տեսնելու։

-- Երբեք։ Չմոռանաս իմ տված դասերը։ Ես ամեն ինչ արեցի, որ դու խիզախ և ճարպիկ որսորդ դառնայիր։ Ժամանակն է, և պարտավոր ես արիությամբ տանել դժվարությունները ու զրկանքները։ Լաց մի՛ եղիր։ Տղամարդն իրավունք չունի արցունք թափելու։ Գնաս բարով...

Կրեկը գլուխը խոնարհեց և երբ նորից վեր բարձրացրեց, Տոհմավագը արդեն հեռացել էր։ Սակայն Կրեկը քարի սիրտ ուներ, երբ մոտեցավ մորը և քույրերին, այլևս չդիմացավ և աղիողորմ լաց եղավ։

(Շարունակելի)

# ՆՈՐ ՏԱՐՎԱ ՀԱՆԴԵՍ



ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

*Հանդեսին մասնակցում են՝*
*ՁՄԵՌ ՊԱՊԻԿԸ,*
*ՁՅՈՒՆԱՆՈՒՇԻԿԸ,*
*ՔՈԹՈԹԻԿ-ՀՈՏՈՏԻԿԸ։*

Գույնզգույն զարդերի մեջ շողշողում է տոնածառը։ Երեխաները տոնածառի շուրջը տեղեր են գրավել։ Հնչում է ուրախ, տոնական երաժշտություն։ Փոքրիկ հաղորդավարը արտասանում է.

*Հյուր է գալիս մեզ Նոր տարին,*
*Երջանիկ ենք հիմա այնպես։*
*Տարեմուտի այս լավ պահին*
*Սկսում ենք ուրախ հանդես։*
*Ինչե՞ր չկան տոնածառին.*
*Է՛լ սկյուռիկ, է՛լ նապաստակ,*
*Է՛լ հերոսներ հեքիաթների,*
*Հասուն մրգեր հազար տեսակ,*
*Թող ծիծաղի իր զարդերով*
*Տոնածառը վառվա՜ռ, դալա՜ր,*
*Իսկ մենք, եկեք, երեխաներ,*
*Բռնենք հիմա ուրախ մի պար։*

Երեխաները պարում են ու ծափ տալիս, պըտըտվում տոնածառի շուրջը։ Իսկ երբ պարը վերջանում է, հաղորդավար տղան ասում է.

*Պար ենք պարում, երգ ենք ասում՝*
*Ուրախ, զվարթ ու ժպտագին,*
*Բայց մեկին ենք մենք սպասում,*
*Ո՞ւմ...*

*ԽՈՒՄԲԸ. — Սպասում ենք Ձմեռ պապին։*

*Հ. ՏՂԱ. — Ճիշտ գուշակեցիք։*

Այժմ էլ հաղորդավար աղջիկն է գալիս առաջ։

*ՀԱՂ. ԱՂՋԻԿ. — Տոնածառը մեզ հետ հիմա*
*Զարդերի տակ կանգնել ուշիմ*
*Ու մեզ նման կանչում է նա*
*Ո՞ւմ...*

*ԽՈՒՄԲԸ. — Կանչում է նա Ձյունանուշին։*

*ՀԱՂ. ԱՂՋԻԿԸ. — Ճիշտ գուշակեցիք։*

Բոլորը ծափ են տալիս։ Այժմ հերթը նորից հաղորդավար տղայինն է։

Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

*ՀԱՂ. ՏՂԱ. — Ուրախածայնն է լավում նրանց*
*Թե՛ ցամաքում, թե՛ եթերում,*
*Ողջ աշխարհի մանուկներին*
*Նվերներ են նրանք բերում։*
*Եկեք նորից երգեր ասենք,*
*Արտասանենք նրանց պատվին,*
*Առաջինը դիմավորենք*
*Ձյունանուշին, Ձմեռ պապին։*

*ՀԱՆԴԵՍԻ ՂԵԿԱՎԱՐ. — Դե, սիրելի երեխաներ, ովքե՞ր են ցանկանում երգել, պարել, արտասանել Ձյունանուշիկի և Ձմեռ պապիկի պատվին։*

(Շատերն են ձեռք բարձրացնում)։

*ՀԱՆԴ. ՂԵԿԱՎԱՐ. — Ապա դու, Կարեն, ի՞նչ ես ցանկանում կատարել։*

*ԿԱՐԵՆ. — Ես ուզում եմ արտասանել «Արի, արի, Ձմեռ պապ» ոտանավորը։*

*ՀԱՆԴ. ՂԵԿԱՎԱՐ. — Շատ լավ, եկ և արտասանիր։*

*ԿԱՐԵՆ. — Երգ ենք ասում քեզ համար*
*Ու զարկում ենք ուրախ ծափ,*
*Դե շուտ, դե շուտ հայտնվիր,*
*Մեր սիրելի Ձմեռ պապ։*
*Որ դռնից որ ցանկանաս—*
*Այն դռնից էլ մտիր ներս*
*Ու բեր քեզ հետ մեր տոնին՝*
*Ձյունանուշին ժպտերես։*

*ՀԱՆԴ. ՂԵԿԱՎԱՐ. — Իսկ հիմա ո՞վ է ուզում իր շնորհքը ցույց տալ, ապա դու, Գայանե։*

*ԳԱՅԱՆԵ. — Ես էլ ուզում եմ Ձյունանուշիկի մասին արտասանել։*

*ՀԱՆԴ. ՂԵԿԱՎԱՐ. — Խնդրեմ։*

ԳԱՅԱՆԵ. — Գեղեցիկ ես ձյունի պես,
Եվ ձյունի պես սպիտակ,
Բայց երկնքի գույնի պես
Աչքեր ունես կապուտակ։
Կարմրաթշիկ ու բարի
Ձյունանուշիկ, շատ արի։
Դու քնքուշ ես ձյունի պես,
Բայց երբ մտնես դու դահլիճ,
Զգույշ մնա չհալվես
Մեր սրտերի կրակից։

(Եվ այդ միջոցին ներս է մտնում փոքրիկ փոստատարը։ Նրա ձեռքին ստվարաթուղթ կա)։

ՓՈՔՐԻԿ ՓՈՍՏԱՏԱՐ. — Հեռագիր, հեռագիր,
Անհասկանալի ձեռագիր...

ԲՈԼՈՐԸ. — Ուրա՜, ուրա՜...

ՀԱՆԴ. ՂԵԿԱՎԱՐ. — Կարդա՛։

ՓՈՔՐԻԿ ՓՈՍՏԱՏԱՐ. — Կարդա՞մ...ըըը՞, ինչպե՞ս կարդամ այս խորհրդավոր հեռագիրը։

ՀԱՆԴ. ՂԵԿԱՎԱՐ. — Հապա մի տուր ինձ (նա վերցնում է հեռագիրը)։
— Հա՜, սիրելի փոքրիկներ, իրոք որ հեռագիրը խորհրդավոր է։ Այստեղ բառերի փոխարեն նկար է տեղավորված։ Դժվար չէ կռահել, որ Ձմեռ պապիկի և Ձյունանուշիկի հետ միասին մեզ մոտ հյուր է գալիս...

ԱՆՀԱՄԲԵՐ ՓՈՔՐԻԿ. — Ո՞վ...

ՀԱՆԴ. ՂԵԿԱՎԱՐ. — Ահա թե ով (նա երեխաներին է պարզում ստվարաթուղթը, որի վրա արջուկ է նկարված)։ Սա Քոթոթիկ-Հոտոտիկն է (Բոլորը ծիծաղում են)։

ԱՆՀԱՄԲԵՐ ՓՈՔՐԻԿ. — Իսկ ինչու՞ է նրա անունը Հոտոտիկ։

ՀԱՆԴ. ՂԵԿԱՎԱՐ. — Նա Ձմեռ պապիկի հավատարիմ օգնականն է։ Հոտոտիկը շատ բարի է և դյուրահավատ։ Նա հավատում է ազնիվ ու ճշտախոս երեխաներին։ Բայց եթե որևէ մեկը փորձի սուտ խոսել, Հոտոտիկը անմիջապես գլուխ կընկնի։ Նա կհոտոտի և ամեն ինչ կիմանա։ Նա հոտոտելով կարող է իմանալ, թե ովքեր են մաքրասեր, աշխատասեր, կարգապահ, ովքեր են ծույլ, ստախոս ու անկարգ։

ԱՆՀԱՄԲԵՐ ՓՈՔՐԻԿ. — Ես չեմ թողնի, որ նա ինձ հոտոտի, ես նրանից կվախենամ։

ՄԻ ՈՒՐԻՇ ՓՈՔՐԻԿ. — Իսկ ես կթողնեմ։

ՄԻ ՈՒՐԻՇ ՓՈՔՐԻԿ. — Ես էլ կթողնեմ, թող Քոթոթիկը իմանա, որ ես տանը մայրիկիս միշտ օգնում եմ։

ԲՈԼՈՐԸ. — Թող գա Քոթոթիկ-Հոտոտիկը, մենք նրան շատ ենք սիրում։

(Այդ միջոցին բացվում է դահլիճի դուռը, և հանդիսավոր քայլերով, փնթփնթալով, մեջտեղ է գալիս արջուկը՝ աչքերին ակնոցներ, ձեռքին գավազան։ Նա դունչը այս ու այն կողմ թեքելով, խոնարհ գլուխ տալով, կանգնում է տոնածառի մոտ)։

ՔՈԹՈԹԻԿ. — Բարև ձեզ, երեխաներ, շնորհավոր ձեր Նոր տարին։

ԵՐԵԽԱՆԵՐ. — Բարև, բարև, Քոթոթիկ-Հոտոտիկ։

ՔՈԹՈԹԻԿ. — Հա՜, արդեն իմ անունը գիտեք, ուրեմն հեռագիրը տեղ է հասել։ Այդ լավ է։ Իսկ ես ուրախ եմ, որ հոտառությունս ինձ չի խաբել և առաջինը ձեզ մոտ է բերել։ Տեսնում եմ, որ դուք լավ եք պատրաստվել Նոր տարվա հանդեսին։



ԱՆՀԱՄԲԵՐ ՓՈՔՐԻԿ. — Քոթոթիկ, իսկ ո՞ր է Ձմեռ պապիկը:

ՔՈԹՈԹԻԿ. — Հա՛, Ձմեռ պապի՞կը... հիմա կկանչեմ: Դուք խելոք երեխաներ եք երևում, արժի, որ Ձմեռ պապիկը ձեզ մոտ գա: Սպասեք, հիմա ազդանշան կտամ (Քոթոթիկը վերցնում է շեփորն ու փչում: Շեփորի և երեխաների ծափահարության ուղեկցությամբ գալիս է Ձմեռ պապիկը Ձյունանուշիկի ձեռքից բռնած):

ՁՄԵՌ ՊԱՊ. — Բարև ձեզ, փոքրիկներ,
Իմ սիրելի թոռնիկներ...

ԲՈԼՈՐԸ ՄԻԱՍԻՆ. — Բարև, Ձմեռ պապին,
Բարև Ձյունանուշին,
Թոռնիկներից փոքրիկ,
Թոռնիկներից ուշիմ:

Ձմեռ պապիկը, Ձյունանուշիկը և Քոթոթիկը իրար ձեռքից բռնած գլուխ են տալիս և հետո ծափահարում փոքրիկներին, փոքրիկներն էլ՝ նրանց:

ՁՄԵՌ ՊԱՊ. — Սիրելի թոռնիկներ, ահա վերջապես հասա ձեզ մոտ: Ճանապարհս երկար էր ու դժվարին: Ես անցա ցուրտ բևեռով, հավերժական սառնամանիքի թագավորությունից անցա: Իմ ճամփին անտառներ ու ծովեր կային, իմ ճամփին՝ փոթորկոտ լեռներ ու սառած գետեր: Ինձ իրենց մոտ էին կանչում քաղցած գայլերն ու մրսած նապաստակները, բայց ես առաջինը ձեզ մոտ եկա:

Մազեր ունեմ բուլա-բուլա,
Մորուք ունեմ սառցալուլա:
Ես ամենից շատ եմ սիրում
Մանուկներին ժիր ու սիրուն:
Սիրում եմ ես լավ պարողին,
Լավ երգողին, լավ կարդողին,
Սիրով դպրոց գնացողին,
Շատ-շատ բաներ իմացողին:
Ծառ ու ծաղիկ մշակողին,
Հանելուկներ գուշակողին:
Ես նվերներ կտամ նրան,
Ով ամենից լավ կպարի,
Այս հանդեսում ուրախության.
Ձեզ կժպտամ բարի՛, բարի՛...
Դե, ձեզ տեսնեմ, սիրուն բալեք,
Եկեք հիմա երգենք, պարենք:

Ձմեռ պապիկը բռնում է Ձյունանուշիկից և Քոթոթիկից, սրանք էլ՝ երեխաներից և պարում են «Տոնածառ ջան, տոնածառ»...

Երբ ավարտվում է պարերգը, Քոթոթիկը դունչը մեկնում է երեխաներից մեկին և սկսում է ուրախ փնթփնթալ:

ՁՄԵՌ ՊԱՊ. — Ի՞նչ պատահեց քեզ, Հաստոտի՛կ:

ՔՈԹՈԹԻԿ. — Այս տղայի վրայից գերազանցիկի հոտ եմ առնում:

ՁՄԵՌ ՊԱՊ. — Օհո՛, Քոթոթիկն արդեն անցել է



իր պարտականությունների. (ապա՝ դառնալով տղային)
Ապա, փոքրիկս, եկ այստեղ (փոքրիկը մոտենում է):

ՁՄԵՌ ՊԱՊ. — Անունդ ի՞նչ է, թոռնիկս:

ՓՈՔՐԻԿ. — Անունս Աշոտիկ է:

ՁՄԵՌ ՊԱՊ. — Լավ անուն ունես, ապրես:
Մի հանելուկ ասեմ, կհանե՞ս:

ԱՇՈՏԻԿ. — Ասա, Ձմեռ պապ:

ՁՄԵՌ ՊԱՊ. — Այն ի՞նչն է, ի՞նչը,
Ոսկուց էլ թանկ,
Եվ արեգակից
Պայծառ ու տաք:

ԱՇՈՏԻԿ. — Մեղրաբլիթն է:

ՔՈԹՈԹԻԿԸ. — Հի՛, հի՛, հի՛...

ՁՅՈՒՆԱՆՈՒՇԻԿ. — Մի՛ ծիծաղիր, Քոթոթիկ, ծիծաղել հարկավոր չէ, պետք է սովորեցնել: Աշոտիկը լավ տղա է. եթե հանելուկի պատասխանը մի անգամ լսի, այլևս չի մոռանա (դառնալով Աշոտիկին), Աշոտիկ, հիշիր. ոսկուց էլ թանկ, արևից էլ պայծառ՝ մայրիկի սերն է:

ՁՄԵՌ ՊԱՊ. — Կարծում եմ, փոքրիկներ, մայրիկներին գովելու լավ առիթ է սա: Դե, ձեզ տեսնեմ, ով է ցանկանում իր մայրիկին գովել:

ԿԱՐԻՆԵ. — Ես:

ՁՄԵՌ ՊԱՊ. — Խնդրեմ, Կարինե:

ԿԱՐԻՆԵ. — (Արտասանում է):

## ՄԱՅՐԻԿԻՍ ՆԿԱՐԸ

— Ունեմ ներկեր ու վրձին,
Կնկարեմ, մայրիկ, քեզ,
Եթե փափուկ քո բարձին
Հենվես հանգիստ ու նայես:—
Նկարում եմ մայրիկիս՝
Առած ներկեր ու վրձին,
Բայց նա կանչեց անհանգիստ.
— Վա՜յ, գործերս մնացին:—
Թողած վրձինը ձեռքիս,
Գնաց նա գործ անելու:
Նկարեցի մայրիկիս՝
Առանց դեմքին նայելու:
Ահա հայացքը նրա,
Ահա աչքերը բարի,
Ահա ձեռքերը բարակ,
Ահա ժպիտն աչքերի:
Ինձ է նայում նա թղթից
Կենդանությամբ գույների.
Ես պատկերը մայրիկիս
Սրտիս խորքում ունեմ:

ՁՄԵՌ ՊԱՊ. — Ապրես, Կարինե, երևում է, որ դու քո մայրիկին շատ ես սիրում: Իսկ ով իր







մայրիկին չտիրի, նա ուրիշ ոչ մեկին չի կարող սիրել։

ՔՈԹՈԹԻԿ. — (գլուխը շարժելով հաստատում է Ձմեռ պապի խոսքը)։ Այո, Կարինե, քո մայրիկը երջանիկ է, որ քեզ պես նկարիչ աղջիկ ունի։

ԱՐՄԵՆ. — Ձմեռ պապ, որ մեծանամ, Ջյունանուշիկի համար մի գեղեցիկ հրթիռ կպատրաստեմ, որ նա նստի ու թռչի իր մայրիկի մոտ։

ՁՄԵՌ ՊԱՊ. — Հնարամիտն ես երևում, Արմեն, բայց դու չգիտես, որ Ջյունանուշիկն ու ես վաղուց հրթիռով ենք մեր գալիս։ Մեր հրթիռի անունը «Հունվար—1» է։ Մեր հրթիռը մի վայրկյանում կարող է ամբողջ աշխարհի շուրջը պտտվել։

ԱՐՄԵՆ. — Վա՜յ...

ՁՄԵՌ ՊԱՊ. — Բա՜...Այսօր առավոտյան մենք հեռո՜ւ Հեռավոր Արևելքում էինք, ցերեկը՝ Չինաստանում ու Հնդկաստանում, Վիետնամում։ Ջյունանուշիկի հետ մենք պարում էինք փոք-



րիկ ճապոնացիների հետ և տխրում, որ այնտեղ աղքատներ ու հարուստներ կան։ Աղքատների երեխաներին տոնածառի մոտ չեն թողում։ Բա՜, այդպիսի երկրներ էլ կան։ Իսկ հեռավոր Վիետնամում ամերիկյան ինքնաթիռները բիչ էր մնում ռումբ գցեին մեր գլխին։ Ես այնպես հառաչեցի, որ մորուքիս մի մասը հալվեց։ Ջյունանուշիկն էլ շատ տխրեց։ Հիմա այնտեղ փոքրիկներ կան, որ զրկվել են հայրական տնից։ Նրանց գլխին թշնամու ինքնաթիռները բնակարան կրակի փոխարեն ռումբերի կրակ են թափում։

ԱՐՄԵՆ. — Մեզ էլ են վիետնամցի երեխաները։ Ձըմեռ պապ, նրանց քեզ հետ բերեիր մեր հանդեսին։

ՁՄԵՌ ՊԱՊ. — Բերել հնարավոր չէ, փոքրիկս, հարկավոր է տանել...

ԱՐՄԵՆ. — Ի՞նչ տանել։

ՁՄԵՌ ՊԱՊ. — Խաղաղություն, խաղաղություն տանել ձեր այս խաղաղ հանդեսից։ Վիետնամցի երեխաները ինձանից խաղաղություն խնդրեցին։ Խաղաղություն են սիրում աշխարհի բոլոր երեխաները. դեղնամորթն ու կարմրամորթը, սևամորթն ու սպիտակամորթը։

ԲՈԼՈՐ ՓՈՔՐԻԿՆԵՐ. — Խաղաղություն հողին,
բարին,
Խաղաղություն աշխարհին,
Երկրներին բոլոր, բոլոր,
Մանուկներին միլիոնավոր։

ԱՐԱՄԻԿ. — Ձմե՜ռ պապ, Ձմե՜ռ պապ, ես կարող եմ խաղաղություն նկարել։ Ահա, տես իմ նկարած խաղաղությունը։

ՁՄԵՌ ՊԱՊ. — Ապա, տեսնեմ,

Արամիկը Ձմեռ պապին է մեկնում մի թուղթ, որի վրա նկարված են ծառ, ծաղիկ, երգող բլբուլ, կապույտ երկինք ու արև։

ՁՄԵՌ ՊԱՊ. — Իսկապես, որ խաղաղություն ես նկարել, Արամիկ, դու գիտե՞ս, թե ինչ է խաղաղությունը (դառնալով երեխաներին), իսկ դուք խաղաղություն երգել գիտե՞ք։

ԲՈԼՈՐԸ. — Գիտե՜նք, գիտե՜նք։

ՁՄԵՌ ՊԱՊ. — Դե, Ջյունանուշիկ, սկսիր չափ տալ, թող բոլորը երգեն։

ՋՅՈՒՆԱՆՈՒՇԻԿ. — Մե՛կ, երկո՛ւ, երե՛ք. սկսում ենք։

Բոլորը երգում են «Թող միշտ լինի արևը» երգը։ Պարերգը վերջանում է։ Քոթոթիկը նորից սկըսում է հառաչել։ Այս անգամ նա դունչը մեկնում է փոքրիկներից մեկի ձեռքերին։

ՔՈԹՈԹԻԿ. — Այս ի՜նչ համեղի բուրմունք է գալիս այս տղայի թաթիկներից։

ՁՅՈՒՆԱՆՈՒՇԻԿ. — Իսկ ի՞նչ բուրմունք է դա։
ՔՈԹՈԹԻԿ. — Ինչ որ ծառի ու ծաղկի բուրմունք լինի։
ՁՅՈՒՆԱՆՈՒՇԻԿ. — Ծառի ու ծաղկի՞...
ՔՈԹՈԹԻԿ. — Այո, այո, ես հաստատ կարող եմ ասել, որ այս տղան կանաչի փոքրիկ բարեկամներից է։
ԿԱՆԱՉԻ ԲԱՐԵԿԱՄ. — Ճիշտ գուշակեցիր։ Ես և իմ ընկերները մեր դպրոցի բակում ծառեր ենք տնկել, ծաղիկներ աճեցրել ծաղկամանների մեջ։ Մենք սիրում ենք սովորել ու աշխատել և ունենք մեր հիմնը, որ կոչվում է «Ընկերով»...
ՁՅՈՒՆԱՆՈՒՇԻԿ. — Հետաքրքիր է լսել ձեր հիմնը, ապա արտասանիր բառերը։
ԿԱՆԱՉԻ ԲԱՐԵԿԱՄ. — ԸՆԿԵՐՈՎ.

Աշունիկը ծառեր տնկեց,
Դու էլ տնկիր, Նահապետ,
Ծառերն էլ են ընկեր ուզում,
Որ զրուցեն իրար հետ։
Վարդանիկը առվակ փորեց,
Դու էլ փորիր, Մերուժան,
Ջրերն էլ են ընկեր ուզում,
Որ իրար հետ քչփչան։
Արտուտիկը պատ է շարում,
Դու ծուլություն մի՛ անի,
Պատերն էլ են ընկեր ուզում,
Մի պատով տուն չի լինի։
Ընկերով են թռչունները
Թևին տալիս, սավառնում,
Արեգակի շողերն անգամ
Ընկերով են լույս դառնում։

Քոթոթիկը, հետևի ոտքերին կանգնելով, բերանը բացուխուփ է անում, հավանության նշան տալիս, հրճվում:
ՁՄԵՌ ՊԱՊ. — Իսկ դու, Քոթոթիկ, հոտոտելուց բացի, կարծեմ, ուրիշ շնորհք էլ ունես։
ՔՈԹՈԹԻԿ. — Այո, ես կարող եմ նաև հանելուկներ գուշակել։
ՁՄԵՌ ՊԱՊ. — Լավ, որ այդպես է, ես քեզ հիմա մի հանելուկ կասեմ, տեսնեմ կկարողանա՞ս գուշակել։
ՔՈԹՈԹԻԿ. — Թող առաջ երեխաները գուշակեն, եթե նրանք չկարողանան, ես կհուշեմ։
ՁՄԵՌ ՊԱՊ. — Շատ լավ, դե լսեք բոլորդ.

Թաթը բրդոտ,
Մազերը խիտ,
Շատ է սիրում
Մեղրաբլիթ։
Ման է գալիս
Միշտ նույն շորով,
Քուն է մտնում
Ձմռան օրով։

Քոթոթիկը հաճույքից մռմռում է և, թաթերը կրծքին դրած, հպարտ կանգնում:
ԵՐԵԽԱՆԵՐ. — Քոթոթի՛կն է, Քոթոթի՛կը։



ՔՈԹՈԹԻԿ. — Այո, այդ ես եմ։ Շատ եմ սիրում մեղրաբլիթ։ Հա՛, հա՛, տվեք ինձ մի մեղրաբլիթ (երեխաները նրան տալիս են մեղրաբլիթի նըման մի բան: Քոթոթիկը սկսում է խժռել ու հաճույքով մռմռալ): Միայն թե այդ վերջին «Ձմռան օրով քուն մտնելը» ինձ այնքան էլ չի սազում։ Դա վերաբերում է ծույլ աշակերտներին, որ կարելի է այսպես ասել.

Ամբողջ տարին քնում է,
Հի՛, հի՛, հի՛,
Դասարանում մնում է,
Հի՛, հի՛, հի՛...

ՋՄԵՌ ՊԱՊ. — Քոթոթիկը ճիշտ է ասում: Այդպիսի աշակերտներ էլ են պատահում: Այդ «բըռնած» աշակերտներից մեկի երեսից մի անգամ քիչ էր մնում շփոթեի իմ տարիքը: Զավեշտական պատմություն է դա, որ պատահել է ծերուկիս հետ: Այդ մասին Ձյունանուշիկը նույնիսկ ոտանավոր է գրել:

ԵՐԵԽԱՆԵՐ. — Թող արտասանի:

ՁՅՈՒՆԱՆՈՒՇԻԿ. — «Ձմեռ պապն ու երկտարեցին»

Քամու նման երգելով,
Նվերներով տոնական,
Ձմեռ պապը ժպտալով
Դպրոց մտավ մի անգամ:
Ու շփոթվեց նա իսկույն,
Չհավատաց իր աչքին,

Երբ Արտակին նա տեսավ
Դասարանում առաջին:
Պապը վաղուց էր տեսել
Մեր Արտակին դպրոցում,
Հիմա կանգնել ու ապշած,
Իր աչքերն էր կկոցում:
Եվ ասում էր՝ երևի
Շտապել եմ, շտապել,
Դեռ հին տարին չի անցել,
Իսկ ես նորից եմ եկել...
Բայց ձայն տվին պապիկին
Մանուկները հանդեսում,
Ասին՝ պապիկ, շուտ արի,
Քեզ վաղուց ենք սպասում:
Այսպես ահա, երեխեք,
Ծույլ Արտակի պատճառով,
Քիչ էր մնում ես ընկներ
Ձմեռ պապը մի տարով:

ՋՄԵՌ ՊԱՊ. — Հա, հա, հա (ծիծաղում է), սիրելի փոքրիկներ, ես հուսով եմ, որ ձեր մեջ Արտակի նման երեխաներ չկան: Իսկ եթե նույնիսկ կան. այս տոնական հանդեսում մենք նրանց մասին չենք խոսի: Բայց թող նրանք իմանան, որ վատ սովորելով վնաս են տալիս ոչ միայն իրենց, այլև Ձմեռ պապիկին և ձեզ բոլորիդ: Այ, տեսեք թե ինչքան վատ բան կըստացվեր, եթե ես Արտակի պատճառով իմ բոլոր նվերները ետ տանեի: (Դառնալով Ձյունանուշիկին): Ձյունանուշիկ, հապա մի բաց արա հանելուկների արկղիկը:

ՁՅՈՒՆԱՆՈՒՇԻԿ. — (Բացում է ձեռքի փոքրիկ տուփը և փոքրիկ թղթեր հանելով կարդում է):

Ի՞նչն է, ի՞նչը.
Ցույց է տալիս օրը քեզ.
Բարակ շորը թե պոկես...

ԱՆՈՒՇԻԿ. — Օրացույցն է:

(Բոլորը ծափահարում են)

ՁՅՈՒՆԱՆՈՒՇԻԿ. — Անուն ունեմ
Երկու բառից,
Չորս վանկից ու
Տասը տառից:
Այս մի կեսը
Ձյունն է սառը,
Երկրորդ կեսը
Քաղցր բառ է,
Ձյունը հալվի
Թե հիմա,
Ո՞ւմ անունը
Կմնա...

ԱՆՈՒՇԻԿ. — Իմ անունը կմնա...

ՋՄԵՌ ՊԱՊ. — Ճիշտ գուշակեց Անուշիկը՝ Ձյունանուշիկի «Ձյունը» թե հալվի, կմնա «Անուշիկը»:

ՔՈԹՈԹԻԿ. — Ձմեռ պապ, իսկ Ձյունանուշիկի վրայից որ ձյունը հալվի, երևի նա էլ Անուշիկի նըման աղջիկ կդառնա:

ՋՄԵՌ ՊԱՊ. — Ա՛յ իմաստուն Քոթոթիկ, դու բըկրում ես ոչ միայն դնչով հոտոտել, այլև մըտքով (դառնալով հանդեսի մասնակիցներին), երեխաներ, կարծում եմ Քոթոթիկն արժանի է, որ դուք հիմա էլ նրան գովեք:

ՍՈՒՐԻԿ. — Ես ոտանավոր գիտեմ Քոթոթիկի մասին:

ՋՄԵՌ ՊԱՊ. — Արտասանիր:

ՍՈՒՐԻԿ. — ՔՈԹՈԹԻԿ-ՀՈՏՈՏԻԿԸ

Արջեր շատ կան աշխարհում.
Սարում, ձորում, անտառում,
Բայց ուրիշ է Քոթոթը,
Մեր խելացի բրդոտը:
Նայեք շենք ու շնորհքին,
Հոտոտում է ամենքին,
Նայեք խելոք աչքերին,
Նայեք բրդոտ թևերին,
Արժանի է նա հիմա
Ձմեռ պապի նվերին:

ՔՈԹՈԹԻԿ. — Շնորհակալ եմ Սուրիկից, շնորհակալ եմ Պապիկից և նրա նվերից: Պապիկի ամենալավ նվերը ինձ ձեր հանդեսին բերելն էր: Չէ՞ որ մենք արջուկներս ապրում ենք մութ անտառում, դպրոց չենք հաճախում, Նոր տարվա հանդեսներ չենք կազմակերպում: Հիմա, որ վերադառնամ անտառ, բոլոր գազաններին կպատմեմ, թե ինչ երջանիկ կյանքով են ապրում մանուկներն աշխարհում: Իսկ ես ուզում եմ, որ ձեր հանդեսում հիշեք նաև անտառի բնակիչներին: (Ձյունանուշիկին դառնալով), Ձյունանուշիկ, տուր այստեղ հանելուկների արկղիկը, հիմա էլ իմ հանած հանելուկները կարդա:

Քոթոթիկը վերցնում է արկղիկը և թերթիկները հանելով տալիս Ձյունանուշիկին:



ՔՈԹՈԹԻԿ. — Ահա այս մեկը կարդա։
ՁՅՈՒՆԱՆՈՒՇԻԿ. — Ո՞վ է պառկում
Թփի տակ,
Մի աչքը բաց,
Մեկը փակ։
ԵՐԵԽԱՆԵՐ. — Նապաստա՛կը։
ՁՅՈՒՆԱՆՈՒՇԻԿ. — Ոտքը բարակ,
Աչքը պայծառ,
Գլխի վրա՝
Ծիրանի ծառ։
ԵՐԵԽԱՆԵՐ. — Եղնի՛կը...
ՁՅՈՒՆԱՆՈՒՇԻԿ. — Պոչը փափլիկ,
Դունչը սուր,
Հավանոցի
Անկոչ հյուր...
ԵՐԵԽԱՆԵՐ. — Աղվե՛սը։
ՁՅՈՒՆԱՆՈՒՇԻԿ. — Ապրում է նա,
Սարում հեռու,
Թշնամին է
Հովիվ քեռու։
ԵՐԵԽԱՆԵՐ. — Գա՛յլը։
ՁՅՈՒՆԱՆՈՒՇԻԿ. — Ասեղներ է
Մեջքով տանում,
Բայց դրանցով
Կար չի անում։
ԵՐԵԽԱՆԵՐ. — Ոզնի՛ն։

ՔՈԹՈԹԻԿ. — Շնորհակալություն, փոքրիկ բարեկամներ։ Թույլ տվեք անտառի բոլոր բնակիչների կողմից շնորհակալություն հայտնել ձեզ։ Դե, ինձ կներեք, ես հիմա պետք է գնամ ուրիշ հանդեսներ հասնելու։

ՁՄԵՌ ՊԱՊ. — Ցտեսություն, ցտեսություն,
Իմ թոռնիկներ ժիր ու արի,
Ես թողնում եմ ձեր աչքերում
Ուրախության մի Նոր տարի։
Ճանապարհս երկար է շատ,
Պիտի կտրեմ երկինք ու ծով
Եվ ողջունեմ ողջ աշխարհին
Այս Նոր տարվա լուսաբացով։
Ձեր աչքերից ողջ աշխարհին
Ես կտանեմ խաղաղություն,
Հետո նորից ձեր աչքերին
Պիտի բերեմ խաղաղություն։
Երջանկության երգը շուրթիս՝
Պիտի անցնեմ ծով ու ցամաք,
Կհանդիպեմ ես ձեզ նորից,
Մի տարով էլ երբ մեծանաք։
Դե մոտ եկեք
Մեկ-մեկ, մեկ-մեկ,
Նվերները ձեր ստացեք,
Ես կգնամ շուտով, շուտով,
Իսկ դուք նորից երգեք, պարեք,
Եվ իմ տեղն էլ հանգստացեք։




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ*



**„Пионер"** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—68—16, 2—39—06,*

ՎՖ 08003: Պատվեր՝ 1598: Տպաքանակ՝ 42000: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 31/X, 1967 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91: Գինը՝ 10 կ.

## ՊԱՏԺՎԱԾ ՀԵՏԱՔՐՔՐԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ

(Ճիշտ լուծման համար՝ 10 միավոր)

Մաթեմատիկայի դասին աշակերտներից մեկը ձեռք բարձրացրեց.

— Ի՞նչ է պատահել, Կոստանդյան:

— Ընկ. Հովհաննիսյան, ասացեք խնդրեմ, քանի՞ տարեկան եք դուք:

Ուսուցիչը տարակուսանքով նայեց աշակերտին և ասաց.

— Մի փոքր համբերիր, դասերի վերջում կասեմ:

Զանգը հնչեց: Դասի վերջին ժամն էր, ուսուցիչը բոլորին տուն ուղարկեց, բացի Կոստանդյանից:

— Մոտեցիր գրատախտակին, — ասաց նա, — վերցրու կավիճը և գրիր: Իմ քառասուններորդ տարին կլրանա այն թվականին, որի վերջին երկու թվանշանները կտարբերվեն իմ ծննդյան տարեթվից միայն դասավորությամբ: Ահա և վերջ: Ավելացնեմ նաև մի բան, որ դա այնքան էլ շուտ չի լինի: Իսկ այժմ լուծիր:

Կոստանդյանը այդպես էլ չկարողացավ լուծել:

Փորձեցեք դուք լուծել և գտնել քանի՞ տարեկան է այժմ ընկ. Հովհաննիսյանը:

## ԵՐԿՈՒ ՋԱՀ

(Ճիշտ լուծման համար՝ 3 միավոր)

*Նոր բնակարանի համար որոշել են գնել երկու միատեսակ ջահ: Բայց ինչպե՞ս նրանք քսաներկուսից երկուսը ընտրեն: Օգնեցեք գնորդներին:*






## ԲԱՌԱՇՂԹԱ-ԽԱՉԲԱՌ

(Ճիշտ լուծման համար՝ 15 միավոր)

1. Քաղաք, որտեղ անց է կացվել Մեծ Հոկտեմբերի 50-ամյակին նվիրված ՍՍՀՄ ժողովուրդների 4-րդ սպարտակիադան։ 2. Անվանի մարմնամարզիկ, աշխարհի և XVI, XVII օլիմպիական խաղերի չեմպիոն։ 3. Ժամանակակից հրնգամարտի աշխարհի քառակի չեմպիոն։ 4. Ծանրամարտի ՍՍՀՄ հավաքական թիմի մարզիչ, սպորտի վաստակավոր վարպետ։ 5. Սովետական հանրաճանաչ բասկետբոլիստ։ 6. Աշխարհահռչակ ծանրորդ, աշխարհի ռեկորդակիր։ 7. Սովետական նշանավոր ֆուտբոլիստ, աշխարհի VIII առաջնության մասնակից։ 8. Շախմատային ֆիգուր։ 9. Սովետական գրոսմեյստեր։ 10. Սպորտային մրցումների սկիզբ։ 11. Քաղաք, որտեղ անցկացվեց 1967 թվականի արհեստակցական միությունների ձմեռային VI սպարտակիադայի լեռնադահուկային սպորտի առաջնությունը։ 12. Նիզականետման Եվրոպայի չեմպիոն, ՍՍՀՄ ռեկորդակիր։ 13. Սպորտային ընկերություն։ 14. Լենինգրադցի դպրոցական, մարմնամարզության գծով ՍՍՀՄ չեմպիոնուհի։ 15. Սովետական անվանի մարմնամարզուհի, XVII օլիմպիական խաղերի ոսկե մեդալակիր։ 16. Տափօղակով հոկեյի ՍՍՀՄ հավաքական թիմի անդամ։ 17. Սպորտային խաղ։ 18. ՍՍՀՄ առաջնության «Բ» խմբում հանդես եկող հայկական ֆուտբոլային թիմ։ 19. Բարձրացատկի ՍՍՀՄ նախկին ռեկորդակիր և բազմակի չեմպիոն։ 20. Հանրաճանաչ հայ ըմբիշ։

ՈՒՂՂԱՀԱՅԱՑ.— 1. Մրցումներում մարզիկի շահած պարգև։ 2. Ֆուտբոլային թիմ՝ ՍՍՀՄ առաջնության «Ա» խմբի երկրորդ ենթախմբում։ 3. Միջինասիական ֆուտբոլային թիմ։ 5. Դահուկավազքի ՍՍՀՄ բազմակի չեմպիոն։ 8. Էստոնացի ուժեղագույն շախմատիստ։ 10. Թեթևատլետիկական գույք՝ ցատկելու համար։ 13. Ղազախական ֆուտբոլային թիմ։ 14. Մոսկվացի շախմատիստուհի։ 15. Հնադարյան պատմություն ունեցող սպորտային խաղ։ 16. Ֆուտբոլային թիմ՝ ՍՍՀՄ առաջնության «Ա» խմբում։ 21. Հայկական ազգային ըմբշամարտ։ 22. Երիտասարդ հեռացատկորդ, ՍՍՀՄ հավաքական թիմի անդամ։ 23. Թեթևատլետիկական գործիք։ 24. Շախմատային տերմին։ 26. Եռացատ՝ ՍՍՀՄ ռեկորդակիր և բազմակի չեմպիոն։ 27. Երկրի ուժեղագույն ֆուտբոլային թիմ։

ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ.— 4. Բարձրացատկի Եվրոպայի չեմպիոնուհի, Մոսկվայի էներգետիկ ինստիտուտի ասպիրանտուհի։ 6. Շախմատային տերմին։ 7. Սովետական փառաբանված վազորդ, Մելբուռնի օլիմպիադայի հերոս։ 9. Հայ ըմբիշ, ՍՍՀՄ օլիմպիական թիմի թեկնածու։ 11. Սպորտային խաղ։ 12. Տիեզերագնաց, սպորտի վաստակավոր վարպետ։ 17. Ձմեռային մարզաձևի գույք։ 18. Սպորտային ակումբ Հայաստանում։ 19. Դարբասապահ, Լենինի շքանշանակիր։ 20. Սպորտային պարգև։ 25. Սպորտային խաղ։ 28. Հրաձգության մրցումներում օգտագործվող գույք։ 29. Սովետական բարձրացատկորդ, որը 1961—1962—1963 թվականներին համարվեց աշխարհի № 1 մարզիկ։ 30. Շախմատային ֆիգուր։ 31. Սովետական գրոսմեյստեր։ 32. Շնորհալի մարմնամարզուհի. ՍՍՀՄ հավաքական թիմի անդամ։




Կազմեց՝ ՄԱՐՏՈՒՆ ՔՈՉԱՐՅԱՆԸ

10 կ.

77806

# Բաժանորդագրվեք «Պիոներ» և «Ծիծեռնակ» ամսագրերին




## ՊԻՈՆԵՐՆԵ՛Ր ԵՎ ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿՆԵ՛Ր

Սկսվել է ձեր ամսագրերի՝ «Պիոների» և «Ծիծեռնակի» 1968 թվականի բաժանորդագրությունը։

1968 թվականին ձեր սիրելի ամսագրերը լույս կտեսնեն ավելի շքեղ և ավելի հարուստ բովանդակությամբ։ Ամսագրերի էջերում դուք կգտնեք հետաքրքիր պատմվածքներ ու հեքիաթներ, զրույցներ ու ակնարկներ, գունազարդ նկարներ ու գծագրեր։ Դուք կկարդաք ձեր պիոներական աշխատանքներին օգնող շատ նյութեր, ինչպես նաև նյութեր գիտության, տեխնիկայի և արվեստի նորությունների մասին։ Ամսագրերի էջերում տպագրված վերատպություններով դուք կհարստացնեք ձեր անձնական և դպրոցի կոլեկցիաները։

Երկու ամսագրերում էլ առատ նյութեր կտրվեն ձեր ժամանցը լավ անցկացնելու համար։

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵՔ «ՊԻՈՆԵՐ» ԵՎ «ԾԻԾԵՌՆԱԿ» ԱՄՍԱԳՐԵՐԻՆ;**

Բաժանորդագրության պայմաններն են՝

| «ՊԻՈՆԵՐ» | «ԾԻԾԵՌՆԱԿ» |
|---|---|
| 3 ամիսը — 30 կ. | 3 ամիսը — 30 կ. |
| 6 ամիսը — 60 կ. | 6 ամիսը — 60 կ. |
| մեկ տարին 1 ռ. 20 կ. | մեկ տարին — 1 ռ. 20 կ. |

*ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ*